## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78*

# ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Մոտենում է 1953 թվականի մարտի 1-ը՝ Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների օկրուգային, շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների օրը։*

*Մեր երկրում ընտրությունները հանդիսանում են համաժողովրդական տոնի օր։* «Դրանք,— *ասում է ընկեր Ստալինը,*— իրոք մեր բանվորների, մեր գյուղացիների, մեր ինտելիգենցիայի համաժողովրդական տոնն են: Աշխարհում դեռ երբեք չեն եղել այդպիսի իրոք ազատ և իրոք դեմոկրատական ընտրություններ, երբե՛ք: Պատմությանը ծանոթ չէ մի ուրիշ այդպիսի օրինակ»:

*Իրոք ազատ, իրոք դեմոկրատական ընտրությունները հնարավոր են միայն մեր Սովետական երկրում, հաղթանակած սոցիալիզմի երկրում։*

*Հայ ժողովուրդը, Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ միասին, դեպի աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններն է գնում*

քաղաքական և աշխատանքային այն մեծ խանդավառության պայմաններում, որ առաջ են բերել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը, համագումարի եզրափակիչ նիստում ընկեր Ստալինի արտասանած պատմական ճառը և նրա «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատությունը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և մեծ Ստալինի առաջնորդությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, մի պլան, որի իրագործումը խոշոր առաջընթաց քայլ կհանդիսանա՝ սոցիալիզմից դեպի կոմունիզմ զարգացման ճանապարհին։ Սովետական ժողովուրդը իր ձեռք բերած համաշխարհային պատմական հաղթանակների, իր երջանիկ և բերկրալի կյանքի համար պարտական է հարազատ Կոմունիստական պարտիային, սիրելի առաջնորդ, հայր և ուսուցիչ ընկեր Ստալինին։ Ընկեր Ստալինի անունը մեր հաղթանակների սիմվոլն է։ Հայկական ՍՍՌ բանվորները, գյուղացիները և ինտե-



լիգենցիան միահամուռ կերպով դեպուտատության համաժողովրդական առաջին թեկնածու են առաջադրել ընկեր Ստալինին։

Մեր մեծ առաջնորդ, հայր և ուսուցիչ սիրելի Ստալինը 1953 թվականի մարտի 1-ին քվեարկվելու է աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի ընտրությունների № 1 ընտրական օկրուգում, որպես Երևանի քաղաքային Սովետի դեպուտատ։

Դեպուտատության թեկնածուներ են առաջադրվել մեր ժողովրդի լավագույն զավակները՝ առաջավոր բանվորներ և բանվորուհիներ, կոլտնտեսականներ և կոլտնտեսուհիներ, գիտության և արվեստի գործիչներ, պարտիական և սովետական աշխատողներ։ Նրանք հանդիսանում են պարտիականների և անպարտականների ստալինյան բլոկի ներկայացուցիչները։

Քվեարկելով պարտիականների և անպարտականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները կքվեարկեն Սովետական Հայրենիքի, Կոմունիստական պարտիայի, մեծ Ստալինի օգտին։

Սովետական ժողովուրդը, զինված պարտիայի 19-րդ համագումարի որոշումներով, ընթանում է դեպի աշխատավորների դեպու-

տասների տեղական Սովետների ընտրու-
թյունները ժողովրդական տնտեսության և
կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք
բերած խոշորագույն նվաճումներով։

Սոցիալիստական էկոնոմիկան, որի զար-
գացման հիմքում ընկած է ընկեր Ստալինի
հայտնագործած սոցիալիզմի հիմնական
տնտեսական օրենքը, անընդհատ զարգա-
նում է և կատարելագործվում։

ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա-
կի երկրորդ տարվա պլանը ամբողջ արդյու-
նաբերության գծով կատարված է 101 տո-
կոսով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության
համախառն արտադրանքը 1952 թվականին,
1940 թվականի համեմատությամբ, աճել է
2,3 անգամ։ 1952 թվականին մեր երկրում
մեքենաներ և սարքավորում արտադրվել է
երեք անգամ ավելի, քան 1940 թվականին։
Հայրենական մեքենաշինությունը 1952 թվա-
կանին ստեղծել է նոր տիպի ու մարկայի
մոտ 600 կարևորագույն մեքենաներ ու մե-
խանիզմներ։

1952 թվականին խոշոր նվաճումներ է
ձեռք բերել սոցիալիստական գյուղատըն-
տեսությունը։ Ընդարձակվել են ցանքա-
տարածությունները և բարձրացել է բերքա-
տվությունը, ավելացել է հանրային անա-



սունների գլխաքանակը, կազմակերպչորեն և
տնտեսապես ամրապնդվել են կոլտնտեսու-
թյունները, մեքենայացվել և էլեկտրիֆիկաց-
վել է գյուղատնտեսական աշխատանքների
մեծ մասը։ Հացահատիկի համախառն բեր-
քը 1952 թվականին հասավ 8 միլիարդ փթի,
որով մեր երկրում հացահատիկային պրոբ-
լեմը լուծված է հաջողությամբ և անվերա-
դարձ կերպով։

Քվեարկելով պարտիականների և անպար-
տիականների ստալինյան բլոկի թեկնածու-
ների օգտին, ընտրողները կքվեարկեն սո-
ցիալիստական արդյունաբերության հետագա
ծաղկման, սոցիալիստական գյուղատնտե-
սության նորանոր հաջողությունների, կոլ-
տնտեսային կարգերի հետագա ամրապընդ-
ման, մեր երկրում մթերքների է՛լ ավելի ա-
ռատություն ստեղծելու օգտին։

1952 թվականին է՛լ ավելի է բարձրացել
սովետական ժողովրդի նյութական բարեկե-
ցության և կուլտուրական կյանքի մակար-
դակը։ ՍՍՌՄ ազգային եկամուտը 1952 թվա-
կանին, 1951 թվականի համեմատությամբ,
աճեց 11 տոկոսով, իսկ 1955 թվականին,
1950 թվականի համեմատությամբ, նախա-
տեսվում է ազգային եկամտի աճ՝ առնվազն
60 տոկոսով, բանվորների և ծառայողների

ռեալ աշխատավարձի բարձրացում՝ առնվազն 35 տոկոսով, կոլտնտեսականների եկամուտների բարձրացում՝ առնվազն 40 տոկոսով։

Ձայն տալով պարտիականների և անպարտիականների բլոկի թեկնածուներին, ընտրողները ձայն են տալիս սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման օգտին։

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը հաստատ և հետևողականորեն վարում են խաղաղության քաղաքականություն։ Մեր պարտիայի և Սովետական Միության շահերը անբաժանելի են ամբողջ աշխարհի խաղաղության շահերից։

Ձայն տալով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուներին՝ ընտրողները ձայն են տալիս խաղաղության օգտին՝ ամբողջ աշխարհում։

1953 թվականի մարտի մեկին Սովետական Հայաստանի բոլոր ընտրողները, մեկ մարդու պես, իրենց ձայնը կտան աշխատավորների դեպուտատների տեղական Սովետներում առաջադրված թեկնածուների օգտին՝ պարտիականների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։

---



# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹԻՎԸ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻՆ ՄԻԱՑՆԵԼՈՒ 125-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Սովետական Հայաստանի աշխատավորությունը մեծ գոհունակությամբ ու շնորհակալության ջերմ զգացումով նշում է Հայաստանը պարսկական դաժան տիրապետությունից ազատելու և Ռուսաստանին միացնելու 125-րդ տարեդարձը։

125 տարի առաջ, 1828 թվականի փետրվարի 22-ին (հին տոմարով 10-ին) Թուրքմենչայ գյուղում Ռուսաստանի և Պարսկաստանի միջև կնքված պայմանագրի համաձայն Արևելյան Հայաստանը միացվեց Ռուսաստանին, որով հայ ժողովրդի հիմնական մասը ազատագրվեց պարսկական բռնակալության ստրկական լծից և իր բախտը ընդմիշտ կապեց ռուս մեծ ժողովրդի բախտի հետ։ Այդ պայմանագրով միաժամանակ ավարտվեց Հյուսիսային Ադրբեջանի միացումը Ռուսաստանին։

Հայ ժողովրդի կյանքում կատարվեց պրոգ-

րեսիվ խոշոր նշանակություն ունեցող պատմական մի շրջադարձ, որի շնորհիվ հայ ժողովուրդը փրկվեց թյուրք-պարսկական զավթիչների և արևմտա-եվրոպական գաղութաբարների կողմից կազմակերպվող ջարդերից, կոտորածներից ու ֆիզիկական բնաջնջումից, կանգնեց տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման նոր ուղու վրա։

Մեր ժողովուրդը այժմ շատ ավելի պարզ ու խորն է գիտակցում այն խոշոր պատմական դերը, որ կատարել և կատարում է ռուս մեծ ու ազատասեր ժողովուրդը մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի կյանքում։ Իր բախտը սերտորեն կապելով ռուս մեծ ժողովրդի բախտի, ռուս ռևոլյուցիոն պրոլետարիատի հզոր շարժման հետ, հայ ժողովուրդն իր իսկական վերջնական սոցիալական և ազգային ազատագրությունը ձեռք բերեց Լենինի—Ստալինի փառապանծ պարտիայի ղեկավարությամբ, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ։

***

Հայ ժողովրդի, ինչպես նաև մեր երկրի նախկինում ճնշված ու շահագործվող մյուս ժողովուրդների, վրացական ու ադրբեջանա-



կան եղբայրական ժողովուրդների միանալը Ռուսաստանին նախապատրաստված էր Ռուսաստանի հետ տնտեսական ու կուլտուրական կապերի պատմական զարգացման ամբողջ ընթացքով և համապատասխանում էր Անդրկովկասի ժողովրդական մասսաների շահերին ու ձգտումներին։ Այդ մի պայծառ էջ էր անդրկովկասյան ժողովուրդների դարավոր ազատագրական պայքարի հերոսական պատմության մեջ։

Հայ բազմադարյան ժողովուրդը ապրելով Արևմուտքի և Արևելքի, Եվրոպայի ու Ասիայի բախման կետում, շարունակ ենթարկվել է օտարերկրյա նվաճողների արյունալի արշավանքներին։ Հրով ու սրով անցել են Հայաստանի տերիտորիայով Եվրոպայի ու Ասիայի բազմաթիվ նվաճողները՝ ասորացիներն ու պարսիկները, հռոմեացիներն ու բյուզանդացիները, արաբներն ու սելջուկները, մոնղոլներն ու օսմանյան թյուրքերը, գերմանա-թյուրքական, անգլո-ամերիկյան զավթիչները, որոնք կողոպտել ու ավերել են երկիրը, խոշտանգել ու բնաջնջել են միլիոնավոր հայերի։ Եվ միայն իր անձնվեր հերոսական պայքարի, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ է հաջողվել հայ ժողովրդին պահպանել իր ֆիզիկական գոյությունը, իր նյութական ու հոգևոր կուլտուրան։

Կորցնելով իր անկախությունը, մասնատվելով օտարերկրյա նվաճողների կողմից, 17-րդ դարում հայ ժողովուրդն ընկնում է պարսկական ու թյուրքական ասիմիլատորների ծանր լծի տակ։ Հետամնաց ֆեոդալական պետությունններ հանդիսացող Իրանի և Թյուրքիայի կառավարական շրջանները, իրանական և թյուրքական կեղեքիչները ամենավայրագ ձևերով արգելակում էին հայ ժողովրդի տնտեսական ու կուլտուրական զարգացումը, բացեիբաց վարում էին նրա ֆիզիկական բնաջնջման քաղաքականություն։

«...Պարսկական ու թյուրքական ասիմիլյատորները,— գրում է ընկեր Ստալինը,— հարյուրավոր տարիներ ծվատում, խոշտանգում ու բնաջնջում էին հայ և վրաց ազգերին, բայց նրանք ոչ միայն չկարողացան ոչնչացնել այդ ազգերին, այլ—ընդհակառակը— հարկադրված եղան նույնպես տեղի տալու» (Երկեր, հատ. 11, էջ 395)։

Իրանական ու թյուրքական, ինչպես նաև մյուս բոլոր նվաճողները տեղի տվեցին, հայ ժողովուրդն ազատվեց լիակատար քայքայումից ու ֆիզիկական բնաջնջումից, որովհետև նրա ազատագրական հերոսական պայքարին օգնության հասավ և ճիշտ ուղղություն տվեց ռուս մեծ ժողովուրդը։



Հայ և ռուս ժողովուրդների մերձեցումը, նրանց անխախտ կապերը դարավոր պատմություն ունեն։ Դեռևս 10-րդ դարում տնտեսական և կուլտուրական բազմաթիվ կապեր են հաստատվել հայերի և Կիևյան Ռուսիայի միջև։ Հետագայում այդ կապերը գնալով ուժեղացել են։ 17-րդ դարում, երբ Հայաստանը բաժանվում է սուլթանական Թյուրքիայի և շահական Պարսկաստանի միջև, երբ ահավոր սպառնալիք է ստեղծվում հայ ժողովրդի ֆիզիկական գոյության համար, հայ ժողովրդի լավագույն զավակները իրենց հայացքներն ուղղում են դեպի Ռուսաստան, որը հայ ժողովրդին բնաջնջումից փրկել կարողացող միակ ռեալ ուժն էր։ Այդ ժամանակվանից և մասնավորապես 18-րդ դարից սկսած հայ ժողովրդի ազատագրական պայքարը սերտորեն կապվում է Ռուսաստանի հետ։

1801 թվականին Վրաստանը միացվում է Ռուսաստանին։ 1813 թ. հոկտեմբերին կնքված Գյուլիստանի պայմանագրով, որով ավարտվեց ռուս-պարսկական առաջին պատերազմը (1804—1813) Ռուսաստանին է միանում Ադրբեջանի մեծ մասը։ Այդ տարիներին Ռուսաստանին են միացվում նաև Հայաստանի մի քանի շրջաններ՝ Լոռի-

Փամբակը, Շիրակը, Զանգեզուրի մի մասը և այլն: Վրաստանի և Ադրբեջանի միացումը Ռուսաստանին հսկայական պրոգրեսիվ նշանակություն է ունենում ո՛չ միայն վրաց և ադրբեջանական եղբայրական ժողովուրդների համար, այլ նաև հայ ժողովրդի համար, որի ազատագրական շարժումը այդ պատմական ակտից հետո նոր թափ է ընտանում: Հայ ժողովուրդն ուժեղացնում է իր պայքարը ռուս ժողովրդի օգնությամբ ամբողջովին ազատագրվելու պարսկական սատրապների լծից:

Անգլո-ֆրանսիական գաղութարարները թշնամական դիրք բռնելով դեպի Ռուսաստանը և նվաճողական քաղաքականություն վարելով Անդրկովկասի նկատմամբ, ամեն կերպ ձգտում էին ձախողել վրաց, ադրբեջանական և հայ ժողովուրդների ազատագրման գործը: Նրանք բոլոր միջոցներով աշխատում էին պաշտպանել Անդրկովկասում թյուրքական և պարսկական դաժան տիրապետությունը: Ռուս-թյուրքական և ռուս-պարսկական պատերազմների ժամանակ նրանք նյութապես, զինամթերքով ու հանդերձանքով, ռազմական մասնագետներով օգնում էին թյուրքական ու պարսկական զավթիչներին, բերելով անթիվ ու անհամար աղետներ անդրկովկասյան ժողովուրդներին:



«Սկսած 18-րդ դարի վերջի ֆրանսիական բուրժուական մեծ ռևոլյուցիայից,— գրել է ընկեր Ստալինը 1927 թվականին անգլիական գաղութարարների մասին,— և վերջացրած այժմ տեղի ունեցող չինական ռևոլյուցիայով, անգլիական բուրժուազիան միշտ կանգնած է եղել և շարունակում է կանգնած մնալ մարդկության ազատագրական շարժումը ջախջախողների առաջին շարքերում» (Երկեր, հատ. 9, էջ 360):

Սակայն ռուսական զենքի ու ռուսական դիվանագիտական հաղթանակի, անդրկովկասյան ժողովուրդների ազատագրական պայքարի հետևանքով անգլո-ֆրանսիական ագրեսորների նվաճողական պլաններն Անդրկովկասում ձախողվեցին:

Անգլիական գաղութարարների հրահրումներով և անմիջական օգնությամբ 1826 թ. ամռանը Պարսկաստանն առանց պատերազմ հայտարարելու ուխտադրուժորեն պատերազմական գործողություններ է սկսում Ռուսաստանի դեմ: Պարսկական զավթիչները ներխուժում են Անդրկովկաս և հարձակվում ռուսական զորքերի վրա:

Անդրկովկաս ներխուժած պարսկական հրոսակախմբերը անգութ դաժանությամբ էին վերաբերվում տեղական բնակչության հետ: Գազազած պարսիկ խաները հրկիզում էին հայ-

կական գյուղերը, մասսայաբար կոտորում հայ բնակչությանը։

Անգլիական գաղութարարների հրահանգով պարսիկ զորքի կողմից այրված գյուղերի ու քաղաքների բնակիչներին օգնության էին հասնում հերոսական ռուսական զորքերը, որոնց հետ միասին կռվում էին հայ, վրացի և ադրբեջանական կամավորական ջոկատները։ Անդրկովկասի բոլոր ժողովուրդները ամենաակտիվ կերպով, չխնայելով իրենց ուժերն ու կյանքը, օգնում էին ռուսական բանակին, նրա հաղթական հարձակման ընթացքում։

1826 թվականին տապալվեցին անգլիական պլանները, իսկ հաջորդ տարում ռուսական քաջարի զորքերը արդեն ազատագրում էին հայ ժողովրդի օրրան Արարատյան դաշտը։

1827 թվականի հոկտեմբերի 1-ին ազատագրվեց Երևանը։

Ճիշտ է նկատել ռուս ժողովրդի մեծ զավակ Գրիբոյեդովը, երբ իր օրագրում նշել է, թե ռուսները ազատելով հայ գյուղացիներին, վարում են մարդասիրական պատերազմ։

Երևանի ազատագրմանը ակտիվ մասնակցություն ունեցան ռուսական բանակի շարքերում գտնվող բազմաթիվ դեկաբրիստներ,



որոնց թվում Մ. Պուշչինը, Պ. Կոնովնիցինը, Պ. Բեստուժևը և ուրիշները։ Երևանի գրավման մարտերին մասնակցել է ռուս մեծ գրող Ա. Ս. Գրիբոյեդովը։ 1826—1828 թվականների ռուս-պարսկական պատերազմին ակտիվ մասնակցություն ունեցավ նաև 1812 թվականի հայրենական պատերազմի հերոս-պարտիզան Դենիս Դավիդովը։

Աշխարհով մեկ ցրված հայ ժողովրդի զավակները մեծագույն ցնծությամբ դիմավորեցին Երևանի և Հայաստանի ազատագրումը։ Երախտագետ հայ ժողովրդի ներկայացուցիչները աշխարհի բոլոր ծայրերից ողջույնի և շնորհակալական նամակներ էին ուղարկում ռուս մեծ ժողովրդի հասցեին։

Հայ հանճարեղ գրող, մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը արտահայտելով հայ ժողովրդի ջերմ սերն ու անհուն երախտագիտությունը, ազատարար ռուս ժողովրդի մասին, գրել է.

«Ռուս անունը պետք է մեզ համար լինի սուրբ, ինչպես նրա արյունը, որով մենք ազատվել ենք ընդմիշտ, նույնպես սուրբ պետք է լինի նաև նրա կամքը, որի ներքո մենք ապրում ենք... աշխատենք ըստ մեր կարողության և հնարավորության ձեռք բերել օգտավետ գիտություններ, կրթել մեր

միտքն ու սիրտը, ձեռք բերել ռուս լեզվի գիտություն և բարի քաղաքացիներ լինել։ Սրանով, հենց միակ սրանով, քան մի ուրիշ բանով, մենք կարող կլինենք միանալ ռուս մեծ ազգի հետ, որի միայն անունը ներշնչում է ամենքին, մինչև իսկ օտարին, սեր և անձնվիրություն...» (Խ. Աբովյան, Երկեր, հատ. 3, էջ 121, Երևան, 1948 թ.)։

Ռուս հասարակությունը նույնպես մեծ ոգևորությամբ ընդունեց ռուսական զենքի նոր հաղթանակը և հայ ժողովրդի ազատագրումը։

Հայաստանի միացումն Ռուսաստանին, որը տեղի ունեցավ ռուսական բանակի երեք խոշոր արշավանքների հետևանքով (1805, 1808 և 1827 թ. թ.) օրինականացվեց Թուրքմենչայի պայմանագրով, որի համաձայն Արևելյան Հայաստանը անցավ Ռուսաստանին։ Այսպիսով ավարտվեց և իրավականորեն վերջնականապես հաստատվեց Հայաստանի և Ադրբեջանի միացումը Ռուսաստանին։

Հայաստանի ազատագրումը պարսկական լծից կատարվեց ռուսական զենքի ուժով, հազարավոր շարքային ռուս զինվորների և հայ գյուղացիների արյան գնով։

Հայաստանում թյուրք-պարսկական կեղեքիչների և դաժան հարստահարիչների լծի



խորտակումը, նրա միացումը Ռուսաստանին հայ ժողովրդի համար խոշոր առաջադիմական նշանակություն ունեցավ։ Այդ պատմական ակտով հայ ժողովուրդն իր բախտը ընդմիշտ կապեց ռուս մեծ ժողովրդի բախտի հետ։

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին հնարավորություն տվեց հայ ժողովրդին կանգնել քաղաքական և կուլտուրական զարգացման նոր ուղու վրա և ձեռք բերել գոյության հնարավորություններ, ազգային միավորման պայմաններ։ Հայաստանը դարձավ աշխարհով մեկ ցրված հայության ազգային կենտրոնը։

Հայ ժողովրդի կուլտուրայի վերածնման վրա խոշոր, բարերար ազդեցություն գործեց ռուսական առաջավոր դեմոկրատական կուլտուրան, ռուս ռևոլյուցիոն հասարակական միտքը։ Հանճարեղ գրող ու լուսավորիչ Խաչատուր Աբովյանը ռուսական առաջավոր դեմոկրատական մտքի բարերար ազդեցության շնորհիվ դարձավ ժողովրդի դեմոկրատական ձգտումների լավագույն արտահայտիչը։

Մեծ ռևոլյուցիոն դեմոկրատ Միքայել Նալբանդյանի գործունեությունը անմիջականորեն առնչված է ռուս ռևոլյուցիոն շարժման և առաջավոր գաղափարախոսության հետ։

Նալբանդյանը սերտ կապերով կապված էր ռուս մեծ դեմոկրատ Չերնիշևսկու և նրա զինակիցների հետ և ամենաակտիվ մասնակցություն ուներ Ռուսաստանի բոլոր ժողովուրդների, այդ թվում հայ ժողովրդի սոցիալական ազատագրման մեծ գործին։ Բելինսկու, Գերցենի, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի և Նալբանդյանի բարերար ազդեցության տակ զարգանում է մեր դեմոկրատական ռևոլյուցիոն գրականությունը։

19-րդ դարի դեմոկրատ գրողների փայլուն պլեադան, հանճարեղ բանաստեղծ Հ. Թումանյանը, ականավոր կոմպոզիտոր Ա. Սպենդիարյանը, գեղանկարչության շատ անվանի վարպետներ, ամբողջ հայ գրականությունը, դրամատուրգիան ու արվեստը, հրապարակախոսությունն ու ժուռնալիստիկան իրենց բարձր ծաղկմամբ պարտական են ռուս առաջավոր կուլտուրայի հետ ունեցած սերտ կապերին, ռուս առաջավոր մտքի բարերար ազդեցությանը։

Հայաստանի միացումը Ռուսաստանին ունեցավ խոշոր նշանակություն, արտադրողական ուժերի զարգացման, արդյունաբերության ստեղծման և բանվոր դասակարգի առաջ գալու գործում։ Հայ ժողովուրդը և առաջին հերթին հայ պրոլետարիատը ներ-



գրավվեց համառուսաստանյան ռևոլյուցիոն շարժման մեջ՝ ընդդեմ ցարիզմի, ընդդեմ սեփական շահագործողների, հանուն սոցիալական և ազգային լիակատար ազատության։ Հայ ժողովրդի առաջավոր մարդիկ ռուս ռևոլյուցիոներների օրինակով պայքար ծավալեցին «սեփական» շահագործողների և ցարիզմի դեմ, գիտակցելով, որ վերջնական ազգային ու սոցիալական ազատագրումը կարող է տեղի ունենալ կալվածատերերի և կապիտալիստների տիրապետության ոչնչացմամբ։

Հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը զարգացման նոր ու բարձր աստիճանի է հասնում այն ժամանակ, երբ Ռուսաստանի ռևոլյուցիոն պայքարի ավանգարդում հանդես է գալիս պրոլետարիատը և նրա փառապանծ պարտիան։ Ազգերի բարեկամությունը վերաճում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի։

Զինվելով մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, Ռուսաստանի բանվոր դասակարգը վճռական կռվի է դուրս գալիս կալվածատերերի ու կապիտալիստների դեմ՝ իր շուրջը համախմբելով Ռուսաստանի բոլոր ճնշված ժողովուրդներին։

Լենինի և Ստալինի անմիջական ղեկավարությամբ, մարքսիզմի ամեն գույնի ու երան-

գի թշնամիների դեմ մղվող անհաշտ պայ-
քարում, աճեցին եղբայրական ժողովուրդ-
ների ռևոլուցիոն սերունդներ, որոնց մեջ
իրենց պատվավոր տեղը գտան Լենինի և
Ստալինի մերձավորագույն զինակիցներ Շա-
հումյանը, Սպանդարյանը, Ջափարիձեն,
Ազիզբեկովը, Օրջոնիկիձեն, Միկոյանը։

Այդ ռևոլուցիոներների ղեկավարությամբ
Անդրկովկասի պրոլետարիատը ամրապըն-
դեց հայ, վրաց և ադրբեջանական ժողո-
վուրդների պատմական բարեկամությունը և
հաղթահարելով բուրժուազիայի սերմանած
նացիոնալիզմը, ռուս պրոլետարիատի օգ-
նությամբ պայքարի ելավ սոցիալիզմի հա-
մար։ Այդ պայքարը գլխավորում էր Լենինի-
Ստալինի պարտիան։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ
ռևոլուցիան բացեց հայ ժողովրդի վերջնա-
կան ազատագրության ճանապարհը։ Բայց
հայ բուրժուազիան և նրա պարտիան—ժո-
ղովրդի կատաղի թշնամիները— դաշնակնե-
րը ամեն կերպ աշխատում էին Հայաստանն
անջատել Ռուսաստանից և հաստատել ի-
րենց արյունոտ տիրապետությունը։

Իմպերիալիստական պետությունները այս
անգամ էլ հանդես եկան որպես հայ ժողո-
վրդի ոխերիմ թշնամիներ։ Դաշնակների



տխրահռչակ տիրապետության հաստատ-
մանն օգնելով, նրանք սկսեցին իրենց եղ-
բայրասպան պատերազմների քաղաքակա-
նությունը, Հայաստանը դարձնելով ավերա-
ծությունների, համաճարակների և մասսա-
յական մահացությունների երկիր։ «Հայաս-
տանը դաշնակների ժամանակ որբերի երկիր
էր, արցունքի երկիր, աղքատության ու վայ-
րենի կամայականությունների երկիր» (Ա.
Միկոյան)։

Դաշնակների կործանարար տիրապետու-
թյունը հայ ժողովրդին կանգնեցրեց կորս-
տի եզրին։

Գիշատիչ ամերիկա-անգլիական և գեր-
մանական իմպերիալիստները հարձակվեցին
Անդրկովկասի վրա՝ Սովետական իշխանու-
թյունը տապալելու և իրենց գաղութային
տիրապետությունը հաստատելու համար։
Այդ ժամանակ, հայերը ավելի քան երբևէ
զգացին ռուս ժողովրդի օգնությունը։ Հայ
ժողովուրդը խորապես հասկացավ կյանքի
կոչող ստալինյան խոսքերի խոր իմաստը.
«...Ռուսաստանի ժողովուրդների բախտը,
իսկ առանձնապես հայ ժողովրդի բախտը,
սերտորեն կապված է Հոկտեմբերյան ռևո-
լուցիայի բախտի հետ» (Ստալին, Երկեր,
հատ. 4, էջ 31)։

Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ ծավալվեց մասսայական պայքար ամերիկա-անգլիական իմպերիալիստների պնակալեզ դաշնակների արյունոտ տիրապետության դեմ։ Սկսվեցին ռևոլյուցիոն շարժումները, որոնք սասանեցին դաշնակների և նրանց հովանավորողների տիրապետությունը։ Հայաստանի բանվորները և գյուղացիները ապստամբության դրոշ բարձրացրեցին դաշնակների տիրապետության դեմ և հերոսական Կարմիր Բանակի օգնությամբ 1920 թվականի նոյեմբերի 29-ին հաստատեցին սովետական կարգեր։

Կատարվեց հայ ժողովրդի դարավոր իղձը։ Հայ աշխատավորական մասսաները ազատվեցին բազմադարյան կեղեքումից ու շահագործումից։ «Տանջված ու բազմաչարչար, Անտանտայի և դաշնակների ողորմածությամբ սովի, քայքայման ու գաղթի մատնված Հայաստանը,— բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը այժմ իր փրկությունը գտավ այն բանի մեջ, որ իրեն հայտարարեց սովետական երկիր... Միայն Սովետական իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն» (Երկեր, հատ. 4, էջ 458)։



«Սովետական Հայաստանը,— ասում է Ա. Ի. Միկոյանը,— բոլոր մյուս ժողովուրդներից ավելի պարտական է Սովետական իշխանությանը։ Այդ իշխանությունը հայ ժողովրդին տվեց ոչ միայն ազատություն, այլև խաղաղ գոյություն, որից այդ ժողովուրդն առաջներում զրկված էր»։

Սովետական իշխանության հաստատմամբ նոր դարագլուխ բացվեց հայ ժողովրդի պատմության մեջ՝ ազգային վերածննդի և սոցիալիզմի դարագլուխը։

Սովետական Ռուսաստանի օգնությամբ Հայաստանը ոչ միայն ազատագրվեց սովից ու համաճարակներից, ֆիզիկական ոչնչացումից, այլև վերականգնեց իր տնտեսությունը, վերափոխեց այն։ Հայաստանը դարձավ առաջավոր ինդուստրիայի, սոցիալիստական գյուղատնտեսության և ծաղկուն կուլտուրայի երկիր։ Հայաստանի աշխատավորությունը հնարավորություն ստացավ Անդրկովկասի եղբայրական ժողովուրդների հետ միասին, դրսևորել իր անսպառ ստեղծագործական հնարավորությունները կյանքի բոլոր բնագավառներում, հայ ժողովուրդը դարձավ Սովետական Միության մեծ ընտանիքի իրավահավասար անդամ, որտեղ

ոչնչացված են ազգային խտրության և սահմանափակության բոլոր պայմանները։

Ի հակադրություն իմպերիալիստական մարդակեր ճիվաղների ռասսայական տեսությունների, «ընտրյալ ազգերի» համաշխարհային տիրապետության զառանցանքների, մեր մեծ պարտիան դաստիարակում է աշխատավորությանը բարձր ու մարդկային ինտերնացիոնալիզմի գաղափարներով։ «Սովետական իդեոլոգիան բոլոր ռասսաների ու ազգերի իրավահավասարության իդեոլոգիան է, ժողովուրդների բարեկամության իդեոլոգիան» («Պրավդա»)։

ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ու ռուս ժողովուրդների, բարեկամությունը ավելի քան ամրապնդվեց Հայրենական Մեծ պատերազմի օրերին, երբ հիտլերյան հորդաների դեմ արդարացի պատերազմի ելան Սովետական Միության բոլոր ազատագրված ժողովուրդները։ Հայ ժողովրդի զավակները անպարտելի Սովետական Բանակի շարքերում Հայրենական Մեծ պատերազմի ռազմաճակատներում կռվում էին իրենց երջանիկ ներկայի և փայլուն ապագայի համար։

Սովետական Միության ուժի գլխավոր աղբյուրներից մեկը,— ասում է Ի. Վ.



Ստալինը,— մեր ժողովուրդների բարեկամությունն է, որը դիմացավ պատերազմի դժվարություններին և փորձություններին, էլ ավելի կոփվեց ֆաշիստական զավթիչների դեմ սովետական մարդկանց մղած պայքարում։

Հետպատերազմյան շրջանում Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները և ինտելիգենցիան ռուս ժողովրդի օգնությամբ ու օրինակով ավելի են բարձրացնում իրենց երկրի տնտեսական հզորությունը, ակտիվորեն մասնակցում Սովետական Միության խաղաղ ստեղծագործական աշխատանքին՝ կոմունիզմի կառուցմանը, հանուն աշխատավորների էլ ավելի բարեկեցիկ և երջանիկ կյանքի։

Հետպատերազմյան Ստալինյան հնգամյակը (1946—1950 թ. թ.) Հայկական ՍՍՌ-ում կատարվեց ժամկետից շուտ։ Հնգամյակի տարիներին հատկապես աճեց մետաղամշակման, էլեկտրամեքենաշինական և գազգահաշինական արդյունաբերությունը։ Հնգամյակի տարիներին շահագործման հանձնվեցին ավելի քան 50 արտադրական խոշոր ձեռնարկություն, ստեղծվեց էլեկտրալիտային, պղնձի, ալյումինի, կաբելի, գեներատորների, տրանսֆորմատորների,

հիդրոտուրբինների, կոմպրեսորների, մետաղահատ դազգահների, ավտոմոբիլային ու տրակտորային պահեստի մասերի, ժամացույցների, էլեկտրաչափիչ սարքերի արտադրություն։

Հնգամյակի տարիներին ընդարձակվեցին գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները։ Զգալիորեն աճեց սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, սոդայի և հանքային զանազան պարարտանյութերի արտադրությունը։

Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերությունը կոմունիզմի մեծ կառուցումներին է ուղարկում տուրբիններ, օդային կոմպրեսորներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, էլեկտրալուսավորման արմատուրա, ավտոմեքենաների մասեր, ավտոդողեր, պեմզա, արթիկ-տուֆ, մարմար և այլ մեքենաներ ու շինանյութեր։

Մեծ վերելք է ապրում սննդի արդյունաբերությունը, որն իր բազմաթիվ ճյուղերով թողարկում է 400-ից ավելի տեսակի արտադրանք։ Ուժեղ զարգացում է ապրել թեթև արդյունաբերությունը։ Ռեսպուբլիկայում մեծ քանակությամբ թողարկվում է բամբակե, մետաքսյա և բրդյա գործվածքներ։



Հայաստանի աշխատավորությունը պատվով է կատարում մեծ Լենինի պատգամը երկրի էլեկտրիֆիկացիայի մասին։ Նախասովետական մի քանի փոքրիկ էլեկտրակայանների փոխարեն այժմ Հայկական ՍՍՌ-ում գործում են բազմաթիվ խոշոր էլեկտրակայաններ։ Հայաստանը բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրանքի քանակով առաջ է անցել այնպիսի կապիտալիստական երկրներից, ինչպիսիք են Ֆրանսիան Իտալիան և Ավստրիան։

Աննախընթաց վերելք է ապրում ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում Սովետական Հայաստանի ընդհանուր ցանքատարածությունները, 1919 թվականի համեմատությամբ ընդարձակվել է վեց անգամ։ Սովետական Հայաստանի գյուղատնտեսությունը աչքի է ընկնում իր տեխնիկական հագեցվածությամբ։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 53 մեքենա-տրակտորային և մեքենա-անասնաբուծական կայաններ, որոնք հնարավորություն են տալիս մեխանիզացնել լեռնային շրջանների կոլ-

տնտեսությունների արտադրական աշխա-
տանքի 94 տոկոսը։

Սովետական Հայաստանի էկոնոմիկայի
նոր վերելքի փայլուն հեռանկարներ են բա-
ցում Սովետական Միության Կոմունիստա-
կան պարտիայի 19-րդ համագումարի դի-
րեկտիվները ՍՍՌՄ զարգացման հինգե-
րորդ հնգամյա պլանի վերաբերյալ։ Ստա-
լինյան նոր հնգամյա պլանով կառուցվում
են բազմաթիվ նոր գործարաններ ու ֆաբ-
րիկաներ։ Մեծ վերելք է ապրելու նաև սո-
ցիալիստական գյուղատնտեսությունը։

Մեր պարտիայի 19-րդ համագումարի դի-
րեկտիվների հիման վրա ռեսպուբլիկայում
հաջողությամբ իրականացվում է պարտա-
դիր 7-ամյա ուսուցումը գյուղական վայրե-
րում և 10-ամյա պարտադիր ուսուցումը
քաղաքում։ Ներկայումս ռեսպուբլիկայի
տարրական, յոթնամյա և միջնակարգ դըպ-
րոցներում սովորում են մոտ 300.000 աշա-
կերտ և աշխատում են 15.987 ուսուցիչ։

Սովետական կարգեր հաստատելուց ա-
ռաջ Հայաստանում չկար ոչ մի բարձրա-
գույն ուսումնական հաստատություն, այժմ
ռեսպուբլիկայում գործում է 17 բարձրա-
գույն ուսումնական հաստատություն։ Միայն
ստացիոնար բուհերում սովորողների թիվը



հասել է մոտ 12 հազար մարդու։ Սովետա-
կան Հայաստանում հազար մարդուն 16 ան-
գամ ավելի շատ ուսանող է ընկնում, քան
ամերիկյան իմպերիալիզմի լծի տակ գտնվող
Թյուրքիայում։ Հազարավոր ուսանողներ ու
ասպիրանտներ սովորում են Մոսկվայի և
մյուս քաղաքների բուհերում ու ակադե-
միաներում։

Զարգացման է հասել ժող-
վրդական առողջապահության գործը։ Եթե
Հայկական ՍՍՌ-ում 483 մարդուն հասնում
է մեկ բժիշկ, ապա Եգիպտոսում 4.350 մար-
դուն է հասնում մեկ բժիշկ, Հոլանդիայում
1.160 մարդուն, Ֆրանսիայում՝ 1000 մար-
դուն։ Սովետական Հայաստանի բնակչու-
թյունը բուժ. օգնությամբ ապահովված է
մոտ ինը անգամ ավելի լավ, քան Թյուր-
քիայի բնակչությունը և 23 անգամ ավելի՝
քան Իրանի բնակչությունը։

Սովետական իշխանության տարիներին
Հայաստանում աննախընթաց կերպով զար-
գացավ գիտությունը։ Հայկական ՍՍՌ Գի-
տությունների Ակադեմիան, որն ստեղծվել
է 1943 թվականին, Հայրենական Մեծ պա-
տերազմի ծանր տարիներին, իր շուրջը հա-

մախմբելով ռուսական առաջավոր գիտության շնորհիվ աճած հարյուրավոր գիտնականներ, իր երեսունից ավելի գիտահետազոտական հաստատություններով լուրջ ավանդ է մտցնում սովետական առաջավոր գիտության զարգացման գործում։ Ակադեմիայի սիստեմում աշխատող շատ գիտնականների անունները հայտնի են ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։

Բուռն կերպով ծաղկել է սովետահայ արվեստն ու գրականությունը։ Հայաստանի արվեստի աշխատողները զգալի հաջողությունների են հասել կոմունիզմի կառուցման համար սովետական մարդկանց պայքարի գեղարվեստական արտացոլման, նրանց կոմունիստական դաստիարակության գործում։ Սովետահայ գրականությունը հարստացրել է մեր իրականությունը, կոմունիզմի կառուցման մեծ գործում հայ ժողովրդի պայքարն արտացոլող նոր երկերով։ Արվեստի, գրականության, գիտության ու տեխնիկայի շատ գործեր արժանացել են Ստալինյան մրցանակի։

Կոմունիստական հասարակարգի կառուց-



ման ժամանակաշրջանում մենք բոլորս ականատես ենք ռուս, հայ և մեր մեծ Միության այլ ազգերի աշխատավորների անխախտ բարեկամության և ստեղծագործական համագործակցության անօրինակ փաստին։ Այնքան սերտ են հայերի կապերը ռուս ժողովրդի հետ, այնքան նշանակալից ռուս ժողովրդի բարերար ազդեցությունը մեր ռեսպուբլիկայի վրա, այնքան մեծ է մեր սերը դեպի ռուս ժողովուրդը, որ հայ ժողովրդի պատմական բարեկամությունը ռուս ժողովրդի հետ մեզանում դարձել է ազգային հպարտության առարկա։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը, ընկեր Ստալինը նոր ու հոյակապ խնդիրներ են դրել սովետական ժողովրդի, այդ թվում նաև Հայաստանի աշխատավորության առաջ։ Այն է.

«Ամեն կերպ ամրապնդել մեր հասարակական ու պետական կարգը։ Է՛լ ավելի զարգացնել սովետական մարդկանց քաղաքական ակտիվությունն ու հայրենասիրությունը, ամրապնդել մեր երկրի ժողովուրդ-

մախմբելով ռուսական առաջավոր գիտու-թյան շնորհիվ աճած հարյուրավոր գիտնա-կաններ, իր երեսունից ավելի գիտահետա-զոտական հաստատություններով լուրջ ա-վանդ է մտցնում սովետական առաջավոր գիտության զարգացման գործում։ Ակադե-միայի սիստեմում աշխատող շատ գիտնա-կանների անունները հայտնի են ռեսպուբ-լիկայի սահմաններից դուրս։

Բուռն կերպով ծաղկել է սովետահայ ար-վեստն ու գրականությունը։ Հայաստանի արվեստի աշխատողները զգալի հաջողու-թյունների են հասել կոմունիզմի կառուցման համար սովետական մարդկանց պայքարի գեղարվեստական արտացոլման, նրանց կո-մունիստական դաստիարակության գործում։ Սովետահայ գրականությունը հարստացրել է մեր իրականությունը, կոմունիզմի կա-ռուցման մեծ գործում հայ ժողովրդի պայ-քարն արտացոլող նոր երկերով։ Արվեստի, գրականության, գիտության ու տեխնիկայի շատ գործեր արժանացել են Ստալինյան մրցանակի։

Կոմունիստական հասարակարգի կառուց-



ման ժամանակաշրջանում մենք բոլորս ա-կանատես ենք ռուս, հայ և մեր մեծ Միու-թյան այլ ազգերի աշխատավորների ան-խախտ բարեկամության և ստեղծագործա-կան համագործակցության անօրինակ փաս-տին։ Այնքան սերտ են հայերի կապերը ռուս ժողովրդի հետ, այնքան նշանակալից ռուս ժողովրդի բարերար ազդեցությունը մեր ռեսպուբլիկայի վրա, այնքան մեծ է մեր սերը դեպի ռուս ժողովուրդը, որ հայ ժողովրդի պատմական բարեկամությունը ռուս ժողովրդի հետ մեզանում դարձել է ազ-գային հպարտության առարկա։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը, ընկեր Ստալինը նոր ու հոյակապ խնդիրներ են դրել սովետական ժողովրդի, այդ թվում նաև Հայաստանի աշխատավորության առաջ։ Այն է.

«Ամեն կերպ ամրապնդել մեր հասարա-կական ու պետական կարգը։ Է՛լ ավելի զարգացնել սովետական մարդկանց քաղա-քական ակտիվությունն ու հայրենասիրու-թյունը, ամրապնդել մեր երկրի ժողովուրդ-

ների բարոյա-քաղաքական միասնությունն ու բարեկամությունը» (Մալենկով, էջ 97)։

Պարտիայի և ընկեր Ստալինի կողմից մեր առջև դրված այս ծրագրային խնդիրները լուծելու համար անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել մեր կադրերի իդեոլոգիական աշխատանքի մակարդակը, մարդկանց գիտակցությունից լիկվիդացիայի ենթարկել կապիտալիզմի մնացուկները և հին հասարակության վնասակար տրադիցիաները։ Անհրաժեշտ է միշտ հիշել կապիտալիստական շրջապատման մասին, վճռական պայքար մղել զգոնության բթացման, բերանբացության, մարքսիզմին խորթ, թշնամական իդեոլոգիաների ամեն տեսակի արտահայտությունների դեմ։

«Մեր հզոր Հայրենիքը գտնվում է իր ուժերի ծաղկման շրջանում և ընթանում է դեպի նոր հաջողություններ,— ասում է ընկեր Մալենկովը մեր պարտիայի 19-րդ համագումարում իր տված զեկուցման մեջ,— Մենք ունենք անհրաժեշտ ամեն ինչ լիակատար կոմունիստական հասարակարգ կառուցելու համար»։

Հայաստանի աշխատավորության մարտական խնդիրն է է՛լ ավելի ծավալել սո-



ցիալիստական մրցությունն ու ստախանովյան շարժումը կոմունիզմի շինարարության, ստալինյան հնգամյակի կատարման, մեր երկրի տնտեսական հզորության բարձրացման համար։

Սովետական ժողովուրդը ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, համախմբված Կոմունիստական պարտիայի շուրջը, զինված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումներով, ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ»-ում կլասիկ աշխատությամբ, կոմունիզմի հանճարեղ ճարտարապետ մեծ Ստալինի առաջնորդությամբ վստահորեն առաջ է ընթանում դեպի կոմունիզմի հաղթանակը։

---

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Կանանց միջազգային օրը՝ Մարտի 8-ը աշխարհի բոլոր երկրների աշխատավոր կանանց մարտական համախմբվածության օրն է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։

Կանանց միջազգային օրը Սովետական Միության աշխատավոր կանայք այս տարի դիմավորում են Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարության ներքո հաջողությամբ կոմունիստական հասարակություն կառուցող բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի քաղաքական ու աշխատանքային ակտիվության նոր՝ հզոր վերելքի իրադրության մեջ։

Լենինի—Ստալինի ամենահաղթ գաղափարները սովետական ժողովրդին ոգեշնչում են հերոսական գործերի՝ հանուն պատմական մեծագույն հաղթանակների կոմունիզմի համար մղվող պայքարում։

***

Սովետական երկրում Մարտի 8-ը դարձել է Հոկտեմբերյան Սոցիալիստական



Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ ճորտությունից ազատագրված կանանց տոնը։

Սովետական երկրում առհավետ անցյալի գիրկն է անցել հասարակության մեջ և ընտանիքում կանանց իրավազրկությունը, ճնշված ու նվաստացված վիճակը, մի վիճակ, որ սովորական է կապիտալիստական աշխարհի համար։

Ստալինյան Կոնստիտուցիան ամրապնդեց տղամարդկանց հետ կանանց հավասար իրավունքները՝ պետական, տնտեսական, կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։

Ստալինյան Կոնստիտուցիան կանանց ոչ միայն տվեց տղամարդկանց հետ հավասար իրավունքներ, այլև պայմաններ ապահովեց այդ իրավունքների իրականացման համար։

Սոցիալիստական հասարակարգում լայնորեն ծաղկում-բարգավաճում են կանանց տաղանդն ու ընդունակությունները, որովհետև Կոմունիստական պարտիան և Սովետական իշխանությունը ստեղծել են բոլոր պայմանները նրանց ստեղծագործական աշխատանքի և կուլտուրական աճման համար։

Մեր սովետական սոցիալիստական դեմոկրատիան ապահովում է կանանց ամենա-

լայն, տարեց տարի աճող մասնակցությունը պետական կառավարմանը։ Բավական է ասել, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի կազմում ընտրվել է 280 կին։ 2.209 կանայք Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ են, կես միլիոնից ավելի կանայք տեղական Սովետների դեպուտատներ են։ Դա սովետական կարգի իսկական ժողովրդական դեմոկրատիզմի վառ արտահայտությունն է, սովետական երկրի կանանց քաղաքական ու կուլտուրական աճի վառ դրսևորումը։

Հայրենիքի նկատմամբ ջերմ սիրով լի՝ սովետական բոցաշունչ հայրենասիրուհիները ակտիվ կերպով պայքարել և պայքարում են պետական պլանների կատարման համար, մեր հայրենիքի տնտեսական հզորության ամրապնդման համար։ Սովետական կանանց ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը, աշխատանքային արիությունն ու տաղանդը միշտ հանդես են եկել և հանդես են գալիս մեր երկրի ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում։

Արդյունաբերության մեջ, տրանսպորտում, կոլտնտեսային ու սովխոզային դաշտերում



և ամենուրեք կանայք ցույց են տալիս անձնվեր, ստեղծագործական աշխատանքի օրինակներ։ Կին գիտնականները առաջ են մղում սովետական գիտությունը։ Կին գրողները, նկարիչները, արտիստուհիներն իրենց ստեղծագործություններով բազմապատկում են աշխարհում ամենաառաջավոր սովետական արվեստի փառքը։ Մանկավարժուհիները և բժշկուհիներն իրենց ուժերը նվիրում են ժողովրդական լուսավորությանն ու առողջապահությանը։

Սոցիալիստական մրցությունը առաջ է քաշում ու աճեցնում արտադրության լավ կազմակերպիչներ, տաղանդավոր նորարարներ, գյուտարարներ։ Ամբողջ երկրում իրենց նորարարությամբ հռչակվածների թվում քիչ չեն նաև կանայք։ Երկրում մեծ թափ ստացավ յուրաքանչյուր օպերացիայում ինքնարժեքը իջեցնելու և հումքը տնտեսելու համար ջուլհակուհի Աննա Ֆեդոսեևայի սկսած մրցությունը, որն արժանացավ Ստալինյան մրցանակի, ինչպես նաև Լենինի շքանշանակիր «Բուրեվեստնիկ» կոշիկի ֆաբրիկայի բրիգադիր Մարիա Լևչենկոյի նախաձեռնած մրցությունը։

Հետևելով լավագույն ստախանովականու-

հիների օրինակին, հազարավոր ու միլիոնավոր սովետական կանայք աշխատում են անձնվիրաբար, բարձրացնում են իրենց վարպետությունը, տիրապետում են աշխատանքի առաջավոր մեթոդներին։

Համաժողովրդական նշանակություն ունեցող մեծ խնդիրներ են լուծում կոլտնտեսային գյուղի կանայք։ Հազարավոր կանայք կոլտնտեսությունների նախագահներ են, հարյուր հազարավոր կանայք՝ բրիգադիրներ և անասնաբուծական ֆերմաների վարիչներ։ Շատ կանայք աշխատում են որպես տրակտորիստներ, կոմբայնավարներ և տրակտորային բրիգադաների բրիգադիրներ։

Ավելի քան երկու հազար կանայք արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման՝ բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման գործում ձեռք բերած նվաճումների համար։ Հիանալի հաջողություններ են ձեռք բերել «Կարավաևո» տոհմաբուծական-կաթնատընտեսական սովխոզի կթվորուհիներ, Սոցիալիստական Աշխատանքի կրկնակի հերոսներ Ե. Գրոխովան, Ա. Նիլովան, Լ. Իվանովան և Ու. Բիրյուկովան, որոնք յուրաքանչյուր կովից ստացել են ավելի քան 7.000 լիտր կաթ։



Կոլտնտեսուհի կանայք Սովետական Միության համար համաշխարհային առաջնություն են նվաճել գարնանացան ցորենի, բամբակի, շաքարի ճակնդեղի բերքատվության ասպարեզում։

Սովետական հասարակարգը կանանց համար լայնորեն բաց է արել միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատությունների դռները։

Սովետական կանայք բեղմնավոր մեծ աշխատանք են կատարում նաև ժողովրդական լուսավորության և առողջապահության բնագավառներում։ Մեկ միլիոնից ավելի կանայք աշխատում են որպես ուսուցչուհիներ՝ աճող սերունդը դաստիարակելով կոմունիստական ոգով։ Ավելի քան մեկ միլիոն կանայք աշխատում են հիվանդանոցներում, պոլիկլինիկաներում և առողջապահական մյուս հիմնարկներում։

ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի գիտական աշխատողների մոտ 40 տոկոսը կանայք են։ Սովետական Միության գիտական-ուսումնական և կուլտուր-լուսավորական հիմնարկներում աշխատող կանանց թիվը հասնում է ավելի քան 2,5 միլիոնի։

Գիտության, գյուտարարության, գրականության և արվեստի բնագավառներում կա-

տարած աչքի ընկնող աշխատանքի համար, ավելի քան 500 կանայք արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչման։ Լաուրեատների թվումն են՝ պրոֆեսոր Օ. Բ. Լեպեշինսկայան, որը խոշոր հայտնագործություն կատարեց բիոլոգիայի մեջ, ականավոր մաթեմատիկոս Կ. Յա. Պոլո—Բարինովա—Կոչինան և ուրիշներ։

Սովետական շատ կանայք համաշխարհային հռչակ են ձեռք բերել աշխարհի ամենաառաջավոր սովետական արվեստի՝ կինոյի, թատրոնի, գրականության, բալետի, նկարչության և քանդակագործության բնագավառում ծավալած իրենց տաղանդավոր գործունեությամբ։

Սովետական կանայք իրենց փայլուն ընդունակություններով աչքի են ընկնում նաև ֆիզկուլտուրայի և սպորտի ասպարեզում։ Սովետական սպորտսմեններին են պատկանում համաշխարհային ռեկորդներից շատերը։ Աշխարհի չմուշկի չեմպիոնի պատվավոր կոչումը, երրորդ անգամ, նվաճեց սովետական սպորտսմենուհի Մարիա Իսակովան։ Շախմատի համաշխարհային չեմպիոնատում առաջին տեղը և չեմպիոնի պատվավոր կոչումը նվաճեց սովետական շախմատիստուհի Լյուդմիլա Ռուդենկոն։



Մեր ժողովուրդը, Լենինի—Ստալինի պարտիան, Սովետական կառավարությունը բարձր են գնահատում կանանց սխրագործությունները սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության գործում, նրանց ծառայությունները խաղաղ ստեղծարար աշխատանքում։ 70 կանանց շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում, ավելի քան երկու հազար կանանց՝ Սոցիալիստական աշխատանքի Հերոսի կոչում, ավելի քան 600 հազար կանայք պարգևատրված են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։

Լենինի—Ստալինի պարտիան և Սովետական կառավարությունը մշտական հոգատարությամբ են շրջապատում մայր-կանանց։ Պետությունը նպաստ է տալիս բազմազավակ և միայնակ մայրերին, ինչպես նաև արձակուրդ է տալիս հղի կանանց, պաշտպանելով աշխատավարձը։ ՍՍՌՄ-ում միայն վերջին հինգ տարվա ընթացքում բազմազավակ ու միայնակ մայրերին վճարվել է ավելի քան 18 միլիարդ ռուբլի պետական նպաստ։ Երկու միլիոն երեխաներ սպասարկվում են մանկապարտեզների, մանկատների պետական ցանցի կողմից։ Միլիոնավոր երեխաներ ամառները անց են կացնում

պիոներական ճամբարներում, մանկական սանատորիաներում, տուրիստական բազաներում։ Սովետական հայրենասիրուհի մայրերը պատասխանատվության բարձր զգացմունքով են կատարում իրենց մայրական պարտքը, երեխաներին դաստիարակելով դարձնելով սովետական Հայրենիքի գիտակից, կուլտուրական քաղաքացիներ, որոնք անհունորեն նվիրված են Լենինի—Ստալինի պարտիային և սիրելի Հայրենիքին։

Սովետական Միության բազմազգ կանանց շարքերում ազատագրված սովետահայ կինը՝ տղամարդուն համահավասար, անձնվիրաբար աշխատում է ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։ Սովետական Հայաստանի բանվոր-ծառայողների ընդհանուր թվի 40 տոկոսը կանայք են կազմում։ Հարյուրավոր կանայք արտադրության առաջավորներ են։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորներից ՍՍՌՄ շքանշաններով և մեդալներով պարգևատըրվածների 60 տոկոսը կազմում են կանայք։ Ռեսպուբլիկայի տասնյակ կանայք արժանա-



ցել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման, դրանց թվումն են ընկ. ընկ. Հեղուշ Նազարեթյանը (Ախուրյանի շրջան), Միսե Կարապետյանը (Արտաշատի շրջան), Սիրուն Ումրշատյանը (Նոր-Բայազետի շրջան) և ուրիշներ։

Հայ կինը, տղամարդկանց հետ համահավասար, դարձել է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ըստեղծողը։ Ավելի քան 700 կանայք աշխատում են Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի գիտահետազոտական ինստիտուտներում և բարձրագույն ուսումնական հաստատություններում։

***

Սովետական կանանց ազատ ու երջանիկ կյանքը ոգեշնչող օրինակ է հանդիսանում ամբողջ աշխարհի կանանց համար։ Սովետական Միություն այցելած անգլիական կանանց դելեգացիայի անդամ Էլիզաբետ Ալլեն, Անգլիա վերադառնալուց հետո, գրել է. «Մենք զարմացած էինք սովետական կանանց հանգստությամբ ու վստահությամբ։ Այդ զգացմունքները հատուկ են միայն այն մարդկանց, որոնք ապրում են ազատ ու երջանիկ կյանքով, որոնց մոտ չկա խորակա-

նություն սեռերի միջև և որոնք ազատ են այն ծանր բեռից, որի տակ դարերով ճնշվել են կանայք»։

Սովետական Միության օրինակը ցույց տվեց ամբողջ աշխարհին, որ կանանց իրավազրկության ոչնչացումը հնարավոր է միայն կապիտալիզմի ոչնչացման և սոցիալիզմի հաղթանակի հետևանքով։ Այդ մասին է խոսում նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների փորձը, որոնք կանգնել են սոցիալիզմի կառուցման ուղու վրա։ Այդ երկրներում իրականացված է կանանց իրավահավասարությունը։ Բուլղարիայի, Ռումինիայի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Լեհաստանի, Ալբանիայի, Մոնղոլիայի, Կորեայի, Չինական Ժողովրդական մեծ Ռեսպուբլիկայի, ինչպես նաև Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի ազատ կանայք ակտիվորեն մասնակցում են այդ երկրների քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքին։

Կապիտալիստական երկրներում կանայք ստիպված են պայքարել ծանր շահագործման, կատարյալ իրավազրկության և ընտանիքում իրենց ստրկական վիճակի դեմ։

Կապիտալիզմի օրոք,— մատնանշում է ընկեր Ստալինը,— աշխատավոր կանայք



«բոլոր ճնշվածներից ամենաճնշվածներն» են։

Կապիտալիստական երկրներում գործազուրկների շարքերում կան միլիոնավոր կանայք։ Այն կանայք, որոնք աշխատում են, տղամարդկանց հետ հավասար կատարած աշխատանքի համար զգալիորեն քիչ աշխատավարձ են ստանում, քան տղամարդիկ։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում կանանց աշխատանքը, տղամարդկանց համեմատությամբ, պակաս է վարձատրվում 25—30 տոկոսով, Անգլիայում՝ 30—50 տոկոսով, Իտալիայում՝ 20—27 տոկոսով։

Կապիտալիզմը կանանց զրկում է քաղաքական իրավունքներից։ Կապիտալիստական երկրներում կանայք զրկված են ընտրական իրավունքից։ Հնդկաստանում 188 միլիոն կանանցից միայն 6 միլիոնն է օգտվում ընտրական իրավունքով։ Հնդկաստանում գրագետ կանանց թիվը երկու տոկոսից չի անցնում։

Կապիտալիստական երկրներում գնալով ավելի շատ կանայք են մասնակից դառնում պատերազմի հրձիգների դեմ, շահագործողների դեմ մղվող պայքարին՝ հանուն դեմոկրատիայի և սոցիալիզմի հաղթանակի։

Կանանց դեմոկրատական շարժումը մեծ ուժ է խաղաղության համար մղվող պայքարում։

Աշխարհի բոլոր երկրների կանայք չեն ուզում և չեն կարող մի կողմ մնալ ամբողջ առաջադեմ մարդկության ընդհանուր գործից։ Գնալով նրանք ավելի լավ են հասկանում, որ առանց խաղաղության երջանիկ չեն կարող լինել իրենց երեխաները։

Գաղութային և կախյալ երկրներում գնալով ավելի շատ կանայք են տղամարդկանց հետ ուս-ուսի մասնակցում ազատության և անկախության համար մղվող ազգային ազատագրական պայքարին։

Բուրժուական կառավարությունները և նրանց ոստիկանությունն ու դատարանները դաժանորեն հետապնդում են խաղաղության և ազատության համար մարտնչող կանանց։ Արևմտյան Գերմանիայում ամերիկյան օկուպանտների դատարանը Լիլիա Վիխտերին բանտարկության է դատապարտել միայն այն բանի համար, որ նա ճշմարտությունն է ասել այն հրեշավոր գազանությունների մասին, որ կատարում են ամերիկյան զավթիչները Կորեայում։ Անգլիայի կառավարությու-



նը նույն բանի համար հետապնդել է Մոնիկ Ֆելտոնին։ Ֆրանսիական կառավարությունը հալածանքների է ենթարկում խաղաղության քաջարի մարտիկ Էժենի Կոտտոնին։

Իմպերիալիստները ոչ մի տեսակ հալածանքներով չեն կարող ընկճել միլիոնավոր կանանց կամքը խաղաղության, ժողովուրդների և իրենց երեխաների անվտանգության համար մղվող պայքարում։

Ամբողջ աշխարհի կանանց ոգեշնչում է սոցիալիզմի երկրի՝ հզոր Սովետական Միության խաղաղության հետևողական, հաստատակամ քաղաքականությունը։

Ֆրանսիական հայտնի հասարակական գործիչ Ժաննետտա Վերմեշը, արտահայտելով բոլոր առաջավոր կանանց մտքերը, ասել է. «Մենք հավատում ենք Սովետական Միությանը՝ խաղաղության գլխավոր ուժին, որովհետև գիտենք, որ իշխանության գլուխ անցած ժողովուրդը չի կարող պատերազմ ցանկանալ։ Մենք գիտենք նաև, որ եթե հարձակվեն Սովետական Միության վրա, նա կկռվի առյուծի ուժով և խիզախությամբ՝ մինչև հաղթանակ, քաջությամբ համակելով ընդհանուր գործի համար պայքարող բոլոր ժողովուրդներին»։

*Մարտի 8-ին, Կանանց միջազգային օրը, ամբողջ աշխարհի աշխատավոր կանայք էլ ավելի սերտորեն կհամախմբեն իրենց շարքերը՝ հակահարված տալու ամերիկա-անգլիական իմպերիալիստների հանցավոր փորձերին, որոնց նպատակն է բորբոքել համաշխարհային երրորդ պատերազմի հրդեհը։*

*Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, սիրելի առաջնորդ և հանճարեղ Իոսիֆ Վիսսարիոնովիչ* Ստալինի *առաջնորդությամբ սովետական կանայք, մեր ամբողջ ժողովրդի հետ միասին, ձեռք կբերեն նոր փայլուն հաջողություններ կոմունիզմի համար մղվող պայքարում։*

*Ս. ԾԱՏՈՒՐՈՎԱ*

**Խմբագրի տեղակալ՝ Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ**

*ՎՖ 00895* *Պատվեր № 198* *Տիրաժ 9350*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան։*